# ԿԱՆԱԴԱ

Պետություն Հյուսիսային Ամերիկայում: Տարածքը՝ 9970,6 հզ. *կմ*²: Բնակչությունը՝ 30,7 մլն (1998): Մայրաքաղաքը՝ Օտտավա (921 հզ.): Հայերի թիվը՝ 60–65 հզ.:

Դիվանագիտական հարաբերություններ Հայաստանի Հանրապետության և Կանադայի միջև հաստատվել են 1992-ին:

Հայերը Կ-ում սկսել են բնակություն հաստատել XIX դ. 80-ական թթ.: Հայտնի է առաջին հայ ներգաղթողի անունը՝ Կարապետ Ներկարարյան, որը 1887-ին հաստատվել է Օնտարիո նահանգի Պորտ Հոպ գյուղաքաղաքում: 1890-ին Հյուսիսային Օնտարիոյի Տեմիսքամինգի շրջանում հանքային հետազոտություններ է ձեռնարկել Ա. Շահինը: 1892-ին Կ. է գաղթել 37, իսկ 1895-ին՝ մոտ 100 հայ: 1896-ին Լևոն Պապայանը, այնուհետև Սոկրատ Յութունճյանը Տորոնտոյում հիմնել են արևելյան գորգերի վաճառատներ (երկուսի շառավիղները շարունակվում են ցայսօր): Կ-ի Քվեբեկ նահանգի առաջին հայ բնակիչներից է Ազիզ Սարաֆյանը, որն այստեղ հաստատվել է 1904-ին: Սկզբնական շրջանում Կ. են եկել հիմնականում հայ տղամարդիկ, որոնց նպատակն էր դրամ վաստակելն ու հայրենիք վերադառնալը: Նրանք որպես բանվորներ աշխատել են Կ-ն դեպի Խաղաղ օվկիանոսի ափ տանող երկաթուղու (Canadian Pacific) շինարարության վրա: Սակայն XIX դ. վերջին թուրքական բռնություններից հալածված հայ գաղթականները ընտանիքներով են ապաստան փնտրել Կ-ում:

Մինչև Մեծ եղեռնը Կ-ում հայերի թիվը հասել է 1800-ի: Նրանք մեծ մասամբ Քղիից էին, Վանից, Մուշից, Խարբերդից, Երզնկայից, գլխավորապես հաստատվել են Բրենտֆորդ, Համիլտոն, Սենտ Կաթրինզ, Պրեստոն արդյունաբերական կենտրոններում, որտեղ բանվորական ուժի կարիք կար:

Մեծ եղեռնին հաջորդած շրջանում սակավաթիվ վերապրողների է հաջողվել Կ. գաղթել, քանի որ երկրի կառավարությունը հայերին դիտել է որպես ասիացիներ, որոնց մուտքը Կ. տարբեր պատճառներով սահմանափակվել է: Բացառություն էր Կ-ի կառավարության հատուկ արտոնությամբ 1923–24-ին 8–12 տարեկան 100 հայ որբերի մուտքը Կ., որոնք բերվել էին Հունաստանի Կորֆու կղզու որբանոցից՝ մի խումբ կանադացի բարերարների կազմակերպած Կանադայի հայկական նպաստամատույց ընկերակցության (Armenian Relief Association of Canada) ջանքերով: Տղաները հաստատվել են Օնտարիո նահանգի Ջորջթաունի (այստեղից էլ՝ «Ջորջթաունի տղաներ» անվանումը) որբանոց-երկրագործական դպրոցում: Երեխաների հոգատարության և կրթության համար կազմվել է մասնավոր հանձնախումբ՝ Ա. Լ. Ալեք-

սանյանի գլխավորությամբ, որը ստանձնել է նաև հայոց լեզվի դասավանդումը: Ա. Ալեքսանյանի, Լ. Պապայանի և հանձնախմբի մյուս հայ անդամների և տղաների դաստիարակ Սրբուհի Պտուկյանի («Մայրիկի») ջանքերով երեխաներին տրվել է հայեցի դաստիարակություն. մինչև 18 տարեկան երեխաները սովորել են հայերեն և անգլերեն (1936-ին հայերեն և անգլերեն հրատարակել են «Արարատ» մերենագիր ամսաթերթիկը): Այսօր Կ-ում կան բազմաթիվ ընտանիքներ, որոնք «Ջորջթաունի տղաների» շառավիղներն են: Ըստ կանադական ներգաղթի վիճակագրական տվյալների՝ 1900-ից մինչև 1930-ը Կ. մուտք է գործել 3100 հայ, որոնց մոտ 75 տոկոսը հաստատվել է Օնտարիո, 20 տոկոսը՝ Քվեբեկ նահանգներում, մնացյալը սփռված էր զանազան քաղաքներում: Մինչև 1948-ը Կ-ի ներգաղթի օրենքներն արգելել են տարագիրների զանգվածային մուտքը: 1931–49-ին Կ. է մուտք գործել ընդամենը 74 հայ:

Օնտարիո ժամանած (1907) բղեցի գաղթականներից Իսրայել Սաֆարյանը (աջից) ընկերոջ հետ

Երկրորդ համաշխարհային պատերազմից (1939–45) հետո դրությունը փոխվել է: 1946-ին Կ. անդամակցել է Տարագրյալների միջկառավարական հանձնաժողովին՝ հանձն առնելով ընդունել Եվրոպայի բազմաթիվ փախստականների: 1948-ին ստեղծվել է Կանադական հայկական կոնգրեսը (Canadian Armenian Congress), որի ջանքերի, ինչպես նաև Կ-ի ներգաղթի օրենքների մեղմացման շնորհիվ հազարավոր հայեր եկել են Կ.: 1960–69-ին Ե. Բաստրմաճյանի և Գ. Պետուկյանի նրաշխավորությամբ և խնամակալությամբ մոտ 5 հզ. հայ գաղթել է Կ. և հաստատվել Մոնրեալում:1970-ական թթ. հայերի թիվը Կ-ում հասել է 30 հզ-ի: Կ-ի հայերի թիվը ստվարացել է հիմնականում Միջին Արևելքի երկրներից՝ Սիրիայից, Լիբանանից, նաև Եգիպտոսից, Թուրքիայից, Հունաստանից գաղթածների հաշվին: Զգալի թիվ են կազմել նաև այդ շրջանում Խորհրդային Հայաստանից գաղթած ընտանիքները: Համայնքը շոշափելի համալրում է ստացել նաև 1990-ական թթ., երբ տնտեսական դժվարությունների պատճառով Հայաստանից Կ. են տեղափոխվել մի քանի հազար հայեր: Ներկայումս (2003) Կ-ում բնակվում է շուրջ 60–65 հզ. հայ: Կենտրոնացած են Մոնրեալ և Տորոնտո քաղաքներում, բնակվում են նաև Վանկուվեր, Սենտ Կաթրինզ, Համիլտոն, Քվեբեկ, Օտտավա, Վինձոր և այլ քաղաքներում, Նովա Սկոշիա և Նյու Բրունսվիկ նահանգներում: Հիմնականում արհեստավորներ են, առևտրականներ, աշխատում են նաև արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ: Զգալի թիվ են կազմում գիտնականները, ճարտարապետները, բժիշկները, արվեստի, գրականության և մամուլի բնագավառի աշխատողները: Կան նաև խոշոր ձեռնարկատերեր և վաճառականներ:

Կ-ի հայ գաղութը համախմբող եկեղեցական կառույցները սկսել են կազմավորվել 1940–50-ական թթ.: Առաջին հայկական եկեղեցին՝ Ս. Գրիգոր Լուսավորիչը, կառուցվել է 1930-ին, Սենտ Կաթրինզում: Ներկայումս հայ առաքելական եկեղեցիներ են գործում Մոնրեալում, Տորոնտոյում, Օտտավայում, Լավալում, Սենտ Կաթրինզում, Վանկուվերում, Միսիսոկայում, Վինձորում, Համիլտոնում, Քեմբրիջում: Կ-ում կան նաև հայ կաթոլիկ և ավետարանական համայնքներ, որոնք ունեն իրենց եկեղեցիները և համապատասխան կրթական ու մշակութային կառույցները:

Կ-ում պետական ծրագրով գործող հայկական ամենօրյա վարժարաններ սկսել են հաստատվել 1970-ական թթ.: Առաջին հայկական դպրոցը կազմակերպվել է Սենտ Կաթրինզում, 1919-ին: Առաջին ամենօրյա հայկական դպրոցը՝ Արմեն Քեպեք-Ալեք Մանուկյան վարժարանը, հիմնել է ՀԲԸՄ-ը 1970-ին, Մոնրեալում: Ներկայումս (2003) Կ-ում գործում են 6 ամենօրյա հայկական վարժարաններ:

Համայնքի ազգային կյանքը կազմակերպելու համար ստեղծվել են բազմաբնույթ կազմակերպություններ ու միություններ: Դեռևս 1904-ին Բրենտֆորդում աշխատող հայերը, թեև ապրում էին ծանր պայմաններում, հիմնել են Քղիի Օսնակ գյուղի բարեսիրաց ընկերությունը՝ իր ծրագիր կանոնագրով, որի նպատակն էր «ուսում և կրթություն տալ Օսնակ գյուղի երկսեռ մանուկներին»: Ընկերությունը գոյատևել է մինչև 1915-ը, երբ այդ գյուղի հայությունը բնաջնջվել է թուրքերի կողմից:

Հայ համայնքների կազմավորման առաջին օրերից հիմնվել են ազգային քաղաքական կուսակցությունների (ՍԴՀԿ, ՀՀԴ) զանազան ակումբներ և կոմիտեներ, բազմաթիվ հայրենակցական, բարեգործական, մշակութային, մարզական, երիտասարդական կազմակերպություններ՝ Պոլսահայ մշակութային միությունը, Հայաստանից արտագաղթածների Երևան-

Էրեբունի, պարսկահայերի «Րաֆֆի» մշակութային-հայրենակցական միությունները, Ջեյթունի հայրենակցական միությունը, Մոնրեալի եգիպտահայերի ընկերակցությունը, ՀԲԸՄ, ՀՕՄ, Նոր սերունդ, Թեքեյան, Համազգային մշակութային միությունների, ՀՄԸՄ-ի մասնաճյուղերը, Կանադայի հայ ուսանողների միությունը, ՀՀԴ-ի երիտասարդական միությունը, Հայ դատի հանձնախումբը, «Հայաստան» համահայկական հիմնադրամի Կ-ի մասնաճյուղը, «Արցախ» հիմնադրամը, Կանադայի հայ առևտրականների խորհուրդը, Մալխասյան հիմնարկությունը, Զորյան հիմնարկությունը են:

Կ-ի տարբեր քաղաքներում կազմակերպվել են թատերական-գեղարվեստական խմբեր՝ «Արմենիա», «Ժորժ Սարգիսյան», «Ալիշան», «Մնակյան» թատերախմբերը, «Անի», «Էրեբունի» պարախմբերը, «Գուսան» երգչախումբը են, լայն գործունեություն է ծավալել «Կոմիտաս» երաժշտական միությունը: Լույս են տեսնում «Ապագա», «Հորիզոն» շաբաթաթերթերը, «Բուրաստան», «Գեղարդ», «Փունջ», «Լրաքաղ», «Լուսաբաց», «Լուսարձակ», «Նոր Սերունդ» պարբերականները:

Գործում են հայկական հեռուստատեսային և ռադիոժամեր՝ «Թեքեյանի ձայնը» (1978-ից), «Հորիզոնը» (1984-ից, հովանավորում է Համազգային մշակութային միությունը) և «Թելե Արմենիա» անհատական ձեռնարկությունը (1977-ից):

Կանադահայերն ակտիվորեն մասնակցում են երկրի տնտեսական, գիտական կյանքին: Մեծ վաստակ ունեն բժիշկ Ջոն Բասմաճյանը (Արքայական համալսարանի անատոմիական ֆակուլտետի ղեկավար), տնտեսագետ Ալբերտ Սաֆարյանը (եղել է Դիփ Ռիվերի քաղաքագլուխը), օրգանական քիմիայի պրոֆեսոր, գյուտարար Ստեփան Հանեսյանը, ֆիզիկոս Արա Մուրադյանը (Կ-ի ատոմային կենտրոնի կիրառական հետազոտությունների ղեկավար), աստղաֆիզիկոս Արշավիր Գյոնճյանը, Մոնրեալի գլխավոր հիվանդանոցի ճառագայթային բժշկության բաժնի վարիչ Հարություն Արզումանյանը, արդյունաբերող Ջավեն Մեսրոպյանը (Համիլտոնի պողպատի ընկերության արտահանման ղեկավար), պատմաբան Գևորգ Բաղճյանը (վերջինիս նախաձեռնությամբ Մոնրեալի համալսարանում կազմակերպվել են հայագիտական դասընթացներ), դիվանագետ Հայկ Սարաֆյանը: Կ-ի խորհրդարանի անդամ է (նաև՝ Կանադա-Հայաստան բարեկամության խորհրդարանական խմբի ղեկավար) Սարգիս Ասատուրյանը: Երկրի մշակութային կյանքում զգալի ներդրում ունեն Կ-ի նկարիչների Արքայական միության անդամ Արման Թաթոսյանը և նկարչուհի Անահիտ Աբրահամյանը, աշխարհահռչակ լուսանկարիչներ Յուսուֆ Քարշը, Արթին Գավուքը, կինոռեժիսոր Ատոմ Էգոյանը, դաշնակահարներ Նորայր Արթինյանը և Գրիգոր Շահվերդյանը, դիրիժորներ Րաֆֆի Արմենյանը (1974-ից՝ Ստատֆորդի սիմֆոնիկ նվագախմբի դիրիժոր և գեղարվեստական ղեկավար) և Նուրհան Արմանը, երգիչներ Դ. Վարժապետյանը (1974-ից՝ Տորոնտոյի օպերային թատրոնի մեներգիչ, «Անի» երիտասարդական երգչախմբի հիմնադիր և խմբավար) և Արտո Մյուհենտիսյանը, Ժիրայր Գանբարճյանը (1970-ից՝ Տորոնտոյի սիմֆոնիկ նվագախմբի կոնցերտմայստեր), երգչուհի Սելմա Քեբլիկյանը (1976-ից՝ «Արմենիա» թատերախմբի կազմակերպիչ և ղեկավար), կոմպոզիտորներ Պետրոս Շուժունյանը և Միհրան Էսեկյուլյանը:

Ջրջքաունի տղաները

Կ-ի հայերը սերտ կապի մեջ են եղել հայրենիքի հետ և մեծապես օգնել նրան. դեռևս Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին (1914–18) կամավորներ են ուղարկել ռազմաճակատ, Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին (1939–45) հանգանակություն կազմակերպել «Սասունցի Դավիթ» տանկային շարասյան ստեղծման համար: 1988-ի Սպիտակի երկրաշարժից տուժած հայրենակիցներին օգնելու համար կանադահայերը մշակել են երկարաժամկետ ծրագրեր՝ ծնողազուրկ երեխաների խնամատարություն, պատանեկան ճամբարների կազմակերպում, բուժարանի, դպրոցների և սրբավայրերի նորոգում:

**Օտտավայում** հայ համայնքը ձևավորվել է 1970-ական թթ.: Ներկայումս (2003) այստեղ բնակվում է շուրջ հազար հայ: Գործում են Ս. Մեսրոպ եկեղեցին, որին կից՝ մեկօրյա հայկական դպրոց, ՀԲԸՄ Օտտավայի և ՀՕՄ-ի «Սևան» մասնաճյուղերը, Հայ մշակութային միությունը:

**Մոնրեալում** հայերը սկսել են հաստատվել XIX դ. վերջից: 1910–

Մոնրեալի հայ կաթոլիկ եկեղեցին

1913-ին այստեղ եկած 16 երիտասարդ հայերը (հիմնականում՝ Բալուից), համարվում են քաղաքի առաջին մնայուն հայ բնակիչները, որոնց շառավիղներն ապրում են ցայսօր: Համայնքը ձևավորվել է XX դ. կեսին: 1961-ին Մոնրեալում բնակվում էր 900, 1982-ին՝ 20 հզ. հայ: Ներկայումս (2003) հայերի թիվը Մոնրեալում շուրջ 30 հզ. է: Նրանք հիմնականում աշխատում են արդյունաբերության, առևտրի, կենցաղսպասարկման ոլորտում, զգալի թիվ են կազմում մտավորականները: Գործում են Ս. Գրիգոր Լուսավորիչ և Ս. Հակոբ հայ առաքելական եկեղեցիները, հայ կաթոլիկ և ավետարանական եկեղեցիներ, որոնց կից՝ մեկօրյա դպրոցներ: Համայնքում կա ամենօրյա երեք հայկական դպրոց:

Մոնրեալի հայերի ազգային կյանքը կազմակերպում են Կ-ի թեմի առաջնորդարանը, ՀՅԴ «Միհրան Փափազյան» կոմիտեն (1956-ից), ՀՅԴ երիտասարդական միության «Լևոն Շանթ» մասնաճյուղը, ՌԱԿ-ի «Էոժեն Փափազյան» ակումբը (1963-ից), Հնչակյան կուսակցության «Վանիկ» մասնաճյուղը (1986-ից), ՀԲԸՄ Մոնրեալի մասնաճյուղը (1956-ից) և Ալեք Մանուկյան մարզամշակութային կենտրոնը, ՀՕՄ-ի «Սոսե» մասնաճյուղը (1957-ից), Թեքեյան [1965-ից, ունեցել է «Հայ բեմ» թատերախումբ (1975–83) և «Նայիրի» պարախումբ (1981–90), 1978-ից՝ «Սևան» պատանեկան ամառային ճամբար], Համազգային (1963-ից, ունի «Պետրոս Դուրյան» թատերախումբ, «Քնար» երգչախումբ, «Անի» պարախումբ), Նոր Սերունդ (1989-ից) մշակութային միությունների, «Հայաստան» համահայկական հիմնադրամի (1993-ից) Մոնրեալի մասնաճյուղերը, Պոլսահայ մշակութային միությունը (1967-ից, ունի «Մնակյան» թատերախումբ, «Շիրակ» պարախումբ, «Արարատ» մարզական թիմ և երիտասարդական բաժին), Մոնրեալի եգիպտահայերի ընկերակցությունը (1997-ից), Մալխասյան հիմնարկը, Մամիկոնյան մշակութային հանձնախումբը, Հայ դատի հանձնախումբը, Հայ ուսանողական միությունը, Կանադահայ բժիշկների միությունը, Հայ կաթոլիկ միության «Ալիշան» թատերախումբը, «Արմենիա» ֆուտբոլի թիմը, հայկական ռադիոժամ (1968-ից): Լույս են տեսնում «Ապագա», «Հորիզոն» շաբաթաթերթերը, «Բուրաստան» հանդեսը, «Գեղարդ» եռամսյան, Հայ կաթոլիկ միության «Նոր տեղեկատու» ամսաթերթը:

Մոնրեալի Ալեք Մանուկյան մարզամշակութային կենտրոնը

Մոնրեալի Թեքեյան մշակութային միության «Նայիրի» պարախումբը

Մոնրեալի քաղաքապետարանի խորհրդի անդամներ են Նուշիկ Էլոյանը (գործադիր վարչության նախագահ), Համիկ Վասիլյան-Բելեյին, Ժակ Չաքրջյանը:

**Սենտ Կաթրինզ** հայերի առաջին խմբերը եկել են 1904-ին: 1918-ին այստեղ կազմվել է առաջին ազգային հոգաբարձությունը: 1919-ին բացվել է Կ-ի առաջին հայկական դպրոցը: 1925-ին Լևոն Պապայանի և պրոֆեսոր Բաղդասարյանի գլխավորությամբ հիմնվել է Կանադահայ միությունը, որի նպատակն էր պաշտպանել Կ-ի հայերի քաղաքացիական իրավունքները, բացել հայկական դպրոցներ, նպաստել ազգապահպանմանը: 1930-ին բացվել է Հայ տունը: Նույն թվականին օծվել է Կ-ում առաջին հայկական եկեղեցին՝ Ս. Գրիգոր Լուսավորիչը, հիմնվել են եկեղեցուն կից մարմիններ: Ներկայումս (2003) Սենտ Կաթրինզում բնակվում է շուրջ 500 հայ:

**Տորոնտոյում** հայերը բնակություն են հաստատել XIX դ. վերջից: Սակայն համայնքը սկսել է կազմավորվել 1920-ական թթ.: 1916-ին Լևոն Պապայանի նախաձեռնությամբ հիմնադրվել է Հայերի օգնության միությունը, 1923-ին՝ ՀԲԸՄ Տորոնտոյի մասնաճյուղը: 1953-ին կառուցվել է Ս. Երրորդություն հայկական եկեղեցին, գործում են նաև Ս. Խաչ, Ս. Մարիամ Աստվածածին եկեղեցիները, որոնց կից՝ մեկօրյա դպրոցներ: Համայնքում կա երեք ամենօրյա վարժարան: Ազգային կուսակցությունները ներկա են համայնքում իրենց կոմիտեներով, ակումբներով, մասնաճյուղերով: Գործում են ՀՅԴ «Սողոմոն Թեհլերյան» կոմիտեն (1956-ից) և ՀՅԴ երիտասարդական միության «Սիմոն Զավարյան» մասնաճյուղը, ՌԱԿ «Եսայի Յաղուբյան» ակումբը (1967), ՍԴՀԿ

«Փարամազ» մասնաճյուղը (1983-ից), ՀՕՄ-ի «Ռուբինա» (1964-ից), Թեքեյան (1967-ից), Համազգային (1969-ից, ունի «Ժորժ Սարգսյան» թատերախումբ, «Գուսան» երգչախումբ, «Էրեբունի» պարախումբ), Նոր սերունդ (1978-ից) մշակութային միությունների, Պոլսահայ մշակութային միության (1988-ից), «Հայաստան» համահայկական հիմնադրամի (1993-ից), Հայկական ժամանակակից հետազոտությունների և փաստագրության Զորյան ինստիտուտի (1985-ից) մասնաճյուղերը, Պապայան հիմնարկը, Հայ դատի հանձնախումբը, Տարեց քաղաքացիների ընկերությունը, «Կոմիտաս» երաժշտական միությունը: Լույս են տեսնում «Նոր սերունդ» ամսագիրը, ՀԲԸՄ «Խոսնակ Տորոնտոյի», «Լուսաբաց» պարբերականները: Գործում է «Հայ հորիզոն» հեռուստակայանը: Տեղի հայերի գլխավոր հավաքատեղին Հայ կենտրոնն է:

Տորոնտոյի Ս. Խաչ ազգային վարժարանի աշակերտները

Տորոնտոն կանադահայության երկրորդ խոշոր կենտրոնն է Մոնրեալից հետո: Ներկայումս (2003) այստեղ բնակվում է շուրջ 27 հզ. հայ:

## ԵԿԵՂԵՑԻ

Հայաստանյայց առաքելական եկեղեցու Կ-ի թեմը կազմավորվել է 1984-ին, Ամենայն հայոց կաթողիկոս Վազգեն Ա Պալճյանի կոնդակով: Առաջնորդանիստը Մոնրեալի Ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցին է: Թեմի առաջնորդն է Բագրատ եպս. Գալստանյանը (2003-ից): 1990–2003-ին թեմը գլխավորել է Հովնան արք. Տերտերյանը:

Թեմի կազմավորումից առաջ Կ-ի հայ համայնքի հոգևոր կարիքները հոգացել է Ամերիկայի Միացյալ Նահանգների Արևելյան թեմի առաջնորդարանը: Սկզբնական շրջանում կրոնական արարողությունները կատարել են այցելու հովիվները բնակարաններում կամ վարձված տաճարներում: Առաջին ազգային հոգաբարձությունը կազմակերպվել է 1918-ին, Սենտ Կաթրինզում: 1930-ին կառուցվել է Կ-ի առաջին հայկական եկեղեցին՝ Ս. Գրիգոր Լուսավորիչը (Սենտ Կաթրինզում):

Մոնրեալի հայ համայնքի եկեղեցական կյանքը պաշտոնապես կազմակերպվել է 1948-ին, երբ ԱՄՆ-ի Արևելյան թեմի առաջնորդ Տիրան եպս. Ներսոյանի ներկայությամբ կազմվել է եկեղեցական հանձնախումբ (6 հոգուց բաղկացած): Այդ ժամանակաշրջանում եկեղեցական արարողությունները կատարվել են Ս. Հովհաննես Մկրտիչ անգլիկան եկեղեցում:

1957-ին Կ-ի իշխանությունները ստորագրել են երկրում Հայաստանյայց առաքելական եկեղեցու պաշտոնական ճանաչման դիմումը: 1967-ին ԱՄՆ-ի Արևելյան թեմի առաջնորդ Թորգոմ արք. Մանուկյանի և թեմական խորհրդի որոշմամբ ստեղծվել է Կ-ի Հայ եկեղեցու փոխանորդություն: Առաջնորդական փոխանորդ է նշանակվել Վաչե եպս. Հովսեփյանը: 1970-ին ծխական խորհրդի որոշմամբ գնվել է եկեղեցի, որը նույն թվականին Կ. Պոլսի պատրիարք Շնորհք Գալուստյանը օծել է որպես առաջնորդանիստ՝ Ս. Գրիգոր Լուսավորիչ անունով: Առաջնորդարանի ենթակայությամբ գործում են 10 ծուխ, 5 ծխական վիճակներ:

Ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցուն կից գործում է շաբաթօրյա դպրոց (1957-ից), մշակութային միություն՝ «Հայ մշակույթի շրջանակ» անունով (1993-ից), տարեցների, տիկնանց, երիտասարդական կազմակերպություններ: 1964-ից եկեղեցու նախաձեռնությամբ հրատարակվում է «Բուրաստան» երկամսյա հանդեսը:

Տորոնտոյի հայ համայնքը սկսել է կազմավորվել 1920-ական թթ., առաջին եկեղեցական հոգաբարձու-

Մոնրեալի Ս.Գրիգոր Լուսավորիչ եկեղեցին

Մոնրեալի Ս. Հակոբ եկեղեցին

թյունը ստեղծվել է 1948-ին: Կրոնական արարողությունները կատարվել են Ս. Ստեփանոս, 1930–53-ին՝ Ս. Երրորդություն անգլիկան եկեղեցիներում: 1953-ին կատարվել է Տորոնտոյի հայկական առաջին՝ Ս. Երրորդություն եկեղեցու օծումը: Եկեղեցուն կից 1956-ից գործում է Ս. Սահակ-Ս. Մեսրոպ դպրոցը, 1978-ից՝ Ս. Խաչ ամենօրյա ազգային վարժարանը, մշակութային հանձնախմբեր, տիկնանց, երիտասարդական կազմակերպություններ: 1987-ին Ամենայն հայոց կաթողիկոս Վազգեն Ա Պալճյանն օծել է հայկական ճարտարապետական ոճով կառուցված (ճարտարապետ՝ Թազվոր Հակոբյան) Ս. Երրորդություն եկեղեցին, որին կից գործում են ամենօրյա վարժարան, մշակութային հանձնախմբեր («Համար», գործում է 1992-ից), տիկնանց, երիտասարդական կազմակերպություններ: 1987-ից եկեղեցու վարչությունը հրատարակում է «Նոր սերունդ» պարբերաթերթը:

Առաջնորդարանի ենթակայությամբ են գործում նաև Վանկուվերում՝ Ս. Վարդան (կառուցվել է 1964-ին), Համիլտոնում՝ Ս. Աստվածածին (1976), Օտտավայում՝ Ս. Մեսրոպ (1979), Միսիսոկայում՝ Ս. Վարդան (1990), Լավալում՝ Ս. Խաչ (1993), Վինձորում՝ Ս. Հարություն (1995) եկեղեցիները: Վանկուվերի, Սենտ Կաթրինզի, Համիլտոնի, Լավալի եկեղեցիներն ունեն մշտական հովիվներ: Մյուս եկեղեցիները, թեև օժտված են ծխական մարմիններով, սակայն ունեն միայն այցելու հովիվ: Վերջին շրջանում կազմվել են Նովա Սկոշիայի, Վիննիպեգի, Քինգստոնի, Էդմոնտոնի և Կալգարիի ծխական վիճակները: Այդ քաղաքներում բնակվող սակավաթիվ հայ ընտանիքների հոգևոր կարիքները հոգում են այցելու հովիվները:

Կ-ի թեմը ներկայացնում է Հայ եկեղեցին Եկեղեցիների կանադական խորհրդում:

Մոնրեալի Տիրամայր Նարեկի հայ կաթոլիկ եկեղեցին

1959-ին կանադահայ մի խումբ գործիչներ, անջատվելով էջմիածնական հոգևոր համայնքից, անցել են Մեծի Տանն Կիլիկիո կաթողիկոսության հովանու տակ և Մոնրեալում հիմնել Ս. Հակոբ եկեղեցին: Այդ բաժանումը բացասաբար է անդրադարձել գաղութի ազգային հավաքական կյանքի վրա: Կանադահայ համայնքի անթիլիասական հատվածը վարչականորեն ընդգրկված է 1957-ին կազմավորված Հյուսիսային Ամերիկայի արևելյան նահանգների և Կանադայի թեմի մեջ (կենտրոնը՝ Նյու Յորք): Թեմի հովանավորությամբ են գործում նաև Լավալի Ս. Գևորգ (1993), Տորոնտոյի Ս. Աստվածածին (1985) և Քեմբրիջի Ս. Նշան եկեղեցիները: Ս. Հակոբ եկեղեցուն կից գործում է Վարդգես Սարաֆյան երկրորդական դպրոցը, Տորոնտոյի Ս. Աստվածածին եկեղեցուն կից՝ ՀՕՄ-ի Քոլոյան վարժարանը:

Կ-ի հայ կաթոլիկ և ավետարանական համայնքները նույնպես ունեն իրենց եկեղեցիները՝ համապատասխան կրթական ու մշակութային կառույցներով: Մոնրեալում գործում է Տիրամայր Նարեկի (1966-ից), Տորոնտոյում՝ Ս. Գրիգոր Լուսավորիչ (1974-ից) հայ կաթոլիկ եկեղեցիները, որոնք ենթակա են Հայ կաթողիկե եկեղեցու Հյուսիսային Ամերիկայի թեմին (կենտրոնը՝ Նյու Յորք): Կան հայ ավետարանական 4 եկեղեցիներ, երկուսը՝ Մոնրեալում (հիմն. 1960 և 1964-ին), մեկը՝ Տորոնտոյում (1960), մյուսը՝ Քեմբրիջում (1969): Մոնրեալի առաջին և Տորոնտոյի եկեղեցիները կապված են Հյուսիսային Ամերիկայի Հայ ավետարանական եկեղեցիների միությանը, իսկ մյուս երկուսը մաս են կազմում Կ-ի միացյալ եկեղեցու (The United Curch of Canada):

**ԴՊՐՈՑ**

Առաջին հայկական դպրոցը Կ-ում հիմնվել է 1919-ին, Սենտ Կաթրինզում: 1930-ին Իսկուհի Հազարյանի և Ռեբեկա Գալփաքճյանի նախաձեռնությամբ կազմակերպվել է Մոնրեալի հայուհյաց բարենպատակ միությունը, որի անդամ Եվնիկե Ղարիբյանի հիմնած դպրոցում շաբաթը երեք օր պարապել են հայոց լեզու և գրականություն: Դպրոցն ընդլայնվել է և գործել մինչև 1944-ը: Կրթական գործն առաջ տանելու հաջորդ քայլը եղել է 1950-ական թթ. բոլոր համայնքներում հայկական եկեղեցիներին կից մեկօրյա դպրոցների հաստատումը, որտեղ երեխաները 3–4 ժամ պարապել են հայոց լեզու, գրականություն, պատմություն, երգ, պար:

ՀԲԸՄ Արմեն Քեպեք-Ալեք Մանուկյան վարժարանի շենքը Մոնրեալում

Մեկօրյա դպրոցներից հայտնի են Տորոնտոյի Ս. Երրորդություն եկեղեցուն կից գործող Ս. Սահակ-Ս. Մեսրոպ դպրոցը (1956-ից), Մոնրեալի Ս. Գրիգոր Լուսավորիչ (1957-ից) և Ս. Հակոբ (1959-ից) եկեղեցիների շաբաթօրյա դպրոցները: 1970-ից գործում է Վանկուվերի մեկօրյա դպրոցը,1980-ից՝ Տորոնտոյի Ս. Գրիգոր Լուսավորիչ հայ կաթոլիկ եկեղեցու շաբաթօրյա դպրոցը: 1996-ին մեկօրյա վարժարաններում սովորել է 530 աշակերտ (45 ուսուցիչ):

Ամենօրյա դպրոցների հիմնումը Կ-ի համայնքում սկսվել է 1970-ական թթ.: Ամենօրյա վարժարանները նախ սկսել են մանկապարտեզի և նախակրթարանի մի քանի դասարանով, ապա յուրաքանչյուր տարի ավելացնելով մեկական դասարան՝ հասել են երկրորդական վարժարանի մակարդակի: Բոլոր վարժարանները գործում են պետական արտոնությամբ, ոմանք նույնիսկ ստանում են պետական մասնակի նպաստ: Պետական կրթական ծրագիրը պարտադիր է, դասավանդման պաշտոնական լեզուն՝ անգլերենը կամ ֆրանսերենը: Հայոց լեզվի և հայերենով դասավանդվող առարկաներին հատկացված է միջին հաշվով՝ մանկապարտեզի և նախակրթարանի համար՝ շաբաթական 8–12 ժամ, միջնակարգ և երկրորդական դասարաններում՝ 5–7 ժամ: Ամենօրյա դպրոցներն ունեն հատուկ մանկական կամ պատանեկան երգչախումբ, պարախումբ կամ թատերախումբ: Ներկայումս գործում են հայկական 6 ամենօրյա վարժարաններ:

**ՀԲԸՄ Արմեն Քեպեք-Ալեք Մանուկյան վարժարան**, ամենօրյա երկրորդական վարժարան, ընդգրկում է մանկապարտեզից մինչև 8-րդ դասարան: Հիմնվել է 1970-ին, Մոնրեալում: Ներկայումս ունի 550 աշակերտ, 48 ուսուցիչ: Տվել է շուրջ 1500 շրջանավարտ:

**Սուրբ Հակոբ վարժարան**, ամենօրյա երկրորդական վարժարան, հիմնվել է 1973-ին, Մոնրեալում: Սկզբում որպես Ս. Հակոբ եկեղեցու ծաղկոց՝ նախադպրոցական տարիքի երեխաների համար, այնուհետև, տարիների ընթացքում ավելացել են նախակրթարանի և միջնակարգի բաժինները, հասել լրիվ երկրորդական վարժարանի մակարդակի (11 դասարան): 1996-ին ուներ 780 աշակերտ, 54 ուսուցիչ:

**Սուրբ Խաչ ազգային վարժարան**, ոչ լրիվ միջնակարգ ամենօրյա

Տորոնտոյի Ս. Խաչ ազգային վարժարանի պարախումբը

դպրոց, հիմնվել է 1978-ին, Տորոնտոյում: Ընդգրկում է տարրականից մինչև 6-րդ դասարան: 1996-ին ուներ 100 աշակերտ և 10 ուսուցիչ-դաստիարակ:

**Քոլոյան վարժարան**, ամենօրյա դպրոց, հիմնել է Հայ օգնության միությունը 1979-ին, Տորոնտոյում: Ընդգրկում է մանկապարտեզի բաժնից մինչև 8-րդ դասարան: 1996-ին ուներ 370 աշակերտ և 25 ուսուցիչ:

**ՀԲԸՄ Դանիել և Ալիս Զարուկյան վարժարան**, ամենօրյա տարրական դպրոց, հիմնել է ՀԲԸՄ-ն 1985-ին, Տորոնտոյում: Ընդգրկում է մանկապարտեզի և նախակրթարանի բաժիններ: 1996-ին ուներ 125 աշակերտ և 13 ուսուցիչ:

**Հայ կաթողիկե Նարեկ վարժարան**, ամենօրյա դպրոց, հիմնվել է 1988-ին, Մոնրեալում: Ընդգրկում է մանկապարտեզի և նախակրթարանի բաժիններ: 1996-ին ուներ 230 աշակերտ և 25 ուսուցիչ-դաստիարակ:

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՅԱՆՔ

Կանադահայ համայնքում գործող քաղաքական, հասարակական, բարեգործական, հայրենակցական, կրթական, երիտասարդական, մարզական, մշակութային կազմակերպությունների հիմնական խնդիրն է հայապահպանությունը, Հայ դատի հետապնդումը, հայրենիքի հետ կապերի զարգացումը են:

**Հայ հեղափոխական դաշնակցություն** 1910–20-ական թթ. տեղական կազմակերպություններ է ստեղծել Հարավային Օնտարիոյի փոքր քաղաքներում (Բրենտֆորդ, Համիլտոն, Սենտ Կաթրինզ), որտեղ ավելի շատ հայեր կային, քան մեծ քաղաքներում: ՀՀԴ տեղական կազմակերպությունները ենթակա էին ԱՄՆ-ի կենտրոնական վարչությանը: 1950-ական թթ. փոքր քաղաքների հայությունը նոսրացել էր, իսկ նորեկ հայերը նախընտրել են մեծ քաղաքները, և կուսակցական գործունեությունն էլ կենտրոնացել է այդ վայրերում: 1956-ին Մոնրեալում հիմնվել է ՀՀԴ «Միհրան Փափազյան» կոմիտեն, Տորոնտոյում՝ «Սողոմոն Թեհլերյան» կոմիտեն, ինչպես նաև ՀՀԴ Կ-ի երիտասարդական միության «Լեռն Շանթ» մասնաճյուղը:

Ստեղծվել են նաև մշակութային, երիտասարդական և այլ օժանդակ կառույցներ: Լույս է տեսնում ՀՀԴ «Հորիզոն» պաշտոնաթերթը:

**Սոցիալ-դեմոկրատ հնչակյան կուսակցությունը** Կ-ի հայ համայնքում սկսել է գործել, ինչպես և ՀՀԴ-ն, 1910–20-ական թթ.: Կազմակերպություններ է ստեղծել հիմնականում Բրենտֆորդ, Համիլտոն, Սենտ Կաթրինզ քաղաքներում: 1950-ական թթ-ից գործունեությունն է ծավալել առավել հայաշատ քաղաքներում: 1983-ին Տորոնտոյում հիմնել է «Փարամազ», 1986-ին Մոնրեալում՝ «Վանիկ» մասնաճյուղերը, ինչպես նաև մշակութային, երիտասարդական, մարզական կառույցներ են: 1982-ից հրատարակում է «Լուսաբաց» պարբերաթերթը:

**Հայկական բարեգործական ընդհանուր միության** առաջին մասնաճյուղը Կ-ում հիմնվել է Տորոնտոյում, 1923-ին, Լևոն Պապայանի գլխավորությամբ: Մինչև 1950-ական թթ. զգալի օգնություն է ցույց տվել հայ գաղթականներին և աղետյալներին: 1981-

Մոնրեալի ՀԲԸՄ Ալեք Մանուկյան կենտրոնը

ից ունի իր սեփական շենքը, որտեղ գործում են մշակութային հանձնախումբը, երիտասարդական բաժինը, մարզական և արիների խմբեր, պարախումբ: Հրատարակում է «Խունկ» տեղեկատու պարբերաթերթը: Մոնրեալի մասնաճյուղը հիմնվել է 1957-ին՝ Խաչիկ Շիրոյանի և Քերովբե Պողոլյանի ջանքերով: 1977-ից ունի իր շենքը: Գործում են մշակութային և տիկնանց հանձնախմբեր, 1964-ից՝ մարզական խմբեր (բասկետբոլի, վոլեյբոլի, սեղանի թենիսի), որոնք տարին մեկ կազմակերպում են «Նավասարդյան» խաղեր, երիտասարդական բաժին: 1970-ից գործում է ՀԲԸՄ Արմեն Քեպեք-Ալեք Մանուկյան վարժարանը: Կարճ ժամանակով՝ 1978-ին, լույս է ընծայել «Նոր այգ» տեղեկատու պարբերաթերթը:

2002-ի դեկտեմբերին Կ-ի կառավարությունը Մոնրեալի ՀԲԸՄ մշակութային հանձնախմբի նախագահ Արսինե Աբքարյանին շնորհել է «Էլիզաբեթ Բ թագուհու հոբելյանական ոսկե մեդալը»՝ ի գնահատումն հայ համայնքի բարգավաճմանն ուղղված նրա գործունեության:

**Կանադական հայկական կոնգրես** (Canadian Armenian Congress) կազմակերպությունը հիմնվել է 1948-ի ապրիլի 3-ին: Հիմնադիրներ և անդամներ՝ Ջոն Մուրադյան, Լևոն Պապայան, Երվանդ Փաստրմաճյան, Քերովբե Պողոլյան, Ջոն Տեր-Ստեփանյան, Սեդրակ Ատուրյան: Պատվո նախագահն էր աշխարհահռչակ լուսանկարիչ Յուսուֆ Քարշը: Կոնգրեսի գլխավոր նպատակն էր դյուրացնել հայ գաղթականների մուտքը Կ., փոխել տալ հայերի նկատմամբ երկրի ներգաղթի քաղաքականությունը: Կոնգրեսի ջանքերի շնորհիվ Կ-ի խորհրդարանի 1952-ի հուլիսի 4-ի նիստի քննարկումների արդյունքում հայերը հանվել են «ասիական ցեղ» դասակարգումից: 1952-ից սկսած՝ Կ. ներգաղթած հայը կարող էր իր հերթին երաշխավորել մի այլ հայի, ինչի շնորհիվ աճել է ներգաղթողների թիվը: 1950–66-ին Կ. է ներգաղթել 6337 հայ: 1968-ին Կ-ի ներգաղթի նախարարության որոշմամբ Կոնգրեսը, որը քսան տարի գործակցել էր նախարարության հետ, լուծարվել է:

**Ռամկավար ազատական կուսակցությունը** կանադահայ համայնքում իր տեղական կազմակերպությունը հիմնել է 1950-ական թթ.: 1963-ին Մոնրեալում բացել է «Էոժեն Փափազյան» ակումբը, 1967-ին Տորոնտոյում՝ «Եսայի Յաղուբյան» ակումբը: «Էոժեն Փափազյան» ակումբին կից գործում է Հայ իրավանց խորհուրդը, որը հաճախ համագործակցում է ՀՀԴ Հայ դատի հանձնախմբի հետ՝ համազգային նշանակության հարցերի հետապնդման և Ապրիլի 24-ի հիշատակի օրվա միջոցառումների առիթներով: ՌԱԿ-ը ունի նաև մշակութային, երիտասարդական և այլ կառույցներ: 1975-ից հրատարակում է «Ապագա» պաշտոնաթերթը:

**Հայ օգնության միության** Մոնրեալի մասնաճյուղը հիմնվել է 1957-ին, Տորոնտոյինը՝ 1964-ին: Հետագա տարիներին մասնաճյուղեր են հիմնվել նաև Կ-ի այլ համայնքներում: Ստեղծման օրվանից ՀՕՄ-ը զբաղվել է մարդասիրական օգնությամբ, հովանավորել դպրոցներ և կրթական ծրագրեր, պատանեկան ճամբարներ, հատկապես օգնել կարիքավոր և տարեց հայրենակիցներին:

**ՀՄԸՄ-ԿԱՄՔ**, հիմնվել է Մոնրեալում, 1958-ին: «Կամքը» միացել է ՀՄԸՄ-ին 1966-ին: Հիմնական անդամները Եգիպտոսից գաղթածներն են: ՀՄԸՄ 1958-ին ուներ ֆուտբոլի թիմ, որը կազմված էր գլխավորապես Հունաստանից գաղթած հայ պատանիներից: Ներգաղթողների թվի ավելացմանը զուգընթաց միությունը կազմակերպել է աղամարդկանց և կանանց, երիտասարդների և պատանիների մարզական թիմեր, որոնք մասնակցում են բասկետբոլի, վոլեյբոլի, ֆուտբոլի և այլ մրցումների:

**«Մամիկոնյան» մշակութային կոմիտե**, հիմնվել է 1959-ին, Մոնրեալում: Գործում է Հայաստանյայց առաքելական Ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցու կազմակերպական կառույցի հովանու ներքո: Բեմադրում է

պիեսներ, օպերետներ, կազմակերպում երգչախմբային համերգներ, հրապարակային դասախոսություններ հայ մշակույթի մասին են: 1970-ին հիմնել է «Վիլյամ Սարոյան» թատերախումբը, 1976-ին՝ «Արմենյան» թատերախումբը:

**Համազգային մշակութային միության** Կ-ի առաջին մասնաճյուղը հիմնվել է 1963-ին, Մոնրեալում: 1969-ին հիմնվել է Տորոնտոյի, 1976-ին՝ Համիլտոնի, 1977-ին՝ Քեմբրիջի, 1981-ին՝ Վանկուվերի մասնաճյուղերը: Այս մասնաճյուղերի գործունեությունը 1975–77-ին համադրում էր Հյուսիսային Ամերիկայի Արևելյան շրջանի վարչությունը: 1977-ին ընտրվել է Կ-ի շրջանային վարչությունը:

Վարչության հովանավորությամբ կազմվել է հանձնախումբ, որը խթանում է հայ գրքի տարածումը Կ-ի բոլոր քաղաքներում: Միության հովանավորությամբ գործում են «Աղամյան», «Սարգիսյան» թատերախմբերը, «Քնար», «Գուսան» երգչախմբերը, «Անի», «Էրեբունի» ժողովրդական պարերի խմբերը: Ունի նաև գրադարան՝ 4 հզ. կտոր գրքով (հայերեն, ֆրանսերեն, անգլերեն): Միությունը կազմակերպում է գեղարվեստական ցուցահանդեսներ, հրապարակային դասախոսություններ հայոց պատմության և մշակույթի, գրականության վերաբերյալ: Գործում են «Համազգայինի ձայն» ռադիո (1969-ից) և «Հորիզոն» (1984-ից) հեռուստածրագրերը:

**Թեքեյան մշակութային միության** Կ-ի մասնաճյուղը հիմնվել է 1965-ին, Մոնրեալում: Թեքեյան մշակութային կենտրոններ կան Մոնրեալում և Տորոնտոյում: Միության հովանավորությամբ գործել են «Հայ բեմ» թատերախումբը (1975–1983), ժողովրդական պարերի «Նայիրի» խումբը (1981–90): 1978-ից կազմակերպվում է «Սևան» պատանեկան ամառային երկամսյա ճամբարը: Տորոնտոյի մասնաճյուղը հիմնվել է 1967-ին, կազմել է սեփական թատերախումբ և երգչախումբ, ստեղծել Տորոնտոյի առաջին ռադիոժամը: Միությունը կազմակերպում է նաև հրապարակային դասախոսություններ հայոց պատմության և մշակույթի մասին, գեղարվեստական ցուցահանդեսներ: Հրատարակում է «Ապագա» շաբաթաթերթը, ունի «Թեքեյանի ձայն» (1978-ից) ռադիոժամը:

Մոնրեալի Թեքեյան մշակութային միության շենքը

**Պոլսահայ մշակութային միություն**, հայրենակցական մշակութային կազմակերպություն: Հիմնել են Կ. գաղթած պոլսահայերը 1967-ին, Մոնրեալում: 1988-ին միության մասնաճյուղ է հիմնվել Տորոնտոյում: Միության հովանավորությամբ գործում են «Մնակյան» թատերախումբը, «Շիրակ» պարախումբը, «Արարատ» մարզական թիմը, «Սայա» երիտասարդաց կազմակերպությունը: 1969-ից հրատարակում է «Գեղարդ» պաշտոնաթերթը:

Պոլսահայ մշակութային միության հովանու տակ գործում է «Մեկ» մշակութային հանձնախումբը, որը կազմակերպում է հայերենի ուսուցման դասընթացներ, գրական և գեղարվեստական ցուցահանդեսներ:

**Հայ դատի հանձնախմբի** Կ-ի մասնաճյուղը հիմնվել է 1970-ին: Նպատակն է պաշտպանել հայ ժողովրդի ազգային ձգտումները, ներկայացնել հայության տեսակետները բոլոր մակարդակներով, ճանաչել տալ Հայոց ցեղասպանության փաստը և Հայ դատի օրինականությունը, հասնել խնդրի քաղաքական լուծմանը:

**Քվեբեկի հայ բժշկական ընկերակցություն**, հիմնվել է 1975-ին: Անդամներն էին բժիշկներ, ատամնաբույժներ, դեղագործներ: Նպատակն էր օգնել և ուղղորդել բժշկության ասպարեզ մուտք գործելու ցանկություն ունեցողներին, ստեղծել Քվեբեկում աշխատող հայ բժիշկների հավաքատեղի-կենտրոն, որտեղ տեղեկություններ կփոխանակեին իրենց մասնագիտությունների վերաբերյալ, հոգալ Քվեբեկի հայ համայնքի բժշկական կարիքները: Այս միության ջանքերով է կազմակերպվել հայ բժիշկների III համաշխարհային կոնգրեսը 1984-ին, Մոնրեալում:

**Նոր սերունդ մշակութային միություն**, հիմնվել է 1978-ին, Տորոնտոյում, Մոնրեալի մասնաճյուղը՝ 1989-ին: Հիմնական նպատակն է սփյուռքհայրենիք կապերի զորացումը: Մոնրեալի մասնաճյուղի հովանավորու-

Մոնրեալի Թեքեյան մշակութային կենտրոնի բացման արարողությունը

Պոլսահայ մշակութային միության շենքը Մոնրեալում

թյամբ գործում է Հայ մարմնամարզական միությունը (ՀՄՄ):

**Քվեբեկի հայագիտական ուսմանց միություն**, հիմնվել է 1982-ին: Հաստատել է հայոց լեզվի, գրականության և պատմության դասընթացներ Քվեբեկի նահանգի համալսարաններում և քոլեջներում, մասնավորապես Կոնկորդիա համալսարանում դասավանդվում է հայոց լեզու: 1983-ին հրատարակել է «Լրատու» պարբերաթերթը:

**Կանադայի Զորյան հաստատություն**, հայկական ժամանակակից հետազոտությունների և փաստագրության ինստիտուտ, հիմնվել է 1985-ին, Տորոնտոյում (կենտրոնը՝ Բոստոն, ԱՄՆ): Հրատարակում է գիտական ուսումնասիրություններ, արխիվային փաստաթղթեր, կազմակերպում «բաց համալսարաններ»: 1991-ից լույս է ընծայում «Diaspora Journal» հանդեսը (տարին երեք համար)՝ Տորոնտոյի համալսարանի հրատարակությամբ:

**Կանադայի հայ առևտրական խորհուրդ**, հիմնվել է 1986-ին, Մոնրեալում: Խորհուրդը մասնաճյուղեր ունի Կ-ի հայ համայնքներում: Նպատակն է զորեղացնել հայ գործարարների միջև համագործակցությունը, օգնել հայկական ապրանքների առևտրի զարգացմանը Կ-ում:

**«Րաֆֆի» մշակութային միություն**, հիմնվել է 1988-ին: Համախմբում է կանադաբնակ իրանահայերին: Նպաստում է հայ մշակույթի պահպանմանն ու առաջընթացին: Ունի կանանց և երիտասարդական խմբեր, նաև ֆուտբոլի թիմ:

**Օնտարիո նահանգի կանադահայ բժշկական ընկերակցություն (ACMAO)**, բարեսիրական կազմակերպություն, հիմնվել է 1988-ին:

Ընկերակցության ատամնաբուժական մասնաճյուղը ստեղծվել է 1992-ին: Զգալի օգնություն է ցուցաբերել Հայաստանի ատամնաբուժական հիմնարկներին:

**Մոնրեալի եգիպտահայերի ընկերակցություն**, հայրենակցական միություն, հիմնվել է 1997-ին: Զբաղվում է մշակութային և բարեսիրական գործունեությամբ, համագործակցում համայնքի բոլոր քաղաքական ուժերի և միությունների հետ:

## ՄՇԱԿՈՒՅԹ

Կ-ի հայ մշակութային կյանքը հարուստ և բազմազան է: Ազգային երաժշտության զարգացման և տարածման գործում որոշակի ներդրում ունեն կատարողական արվեստի ներկայացուցիչները՝ երգիչ-երգչուհիներ Ա. Աբգարյանը, Ալին Գութանը, Դավիթ Վարժապետյանը, դաշնակահարներ Րաֆֆի Արմենյանը (նաև դիրիժոր, Երևանում ելույթ է ունեցել 1999-ին), Նորայր Արթինյանը, Գրիգոր Շավերդյանը, Լ. Ֆստըքճյանը, ջութակահարներ Վ. Արմենյանը (Երևանում ելույթ է ունեցել 1999-ին), Նուրհան Արմանը (նաև դիրիժոր), Հ. Շեհիրյանը, Դ. Իմաստունյանը, կոմպոզիտորներ Պետրոս Շուժունյանը, Միհրան Էսեկոսյանը, Գևորգ Անտոնյանը, դիրիժոր Հարութ Ֆազլյանը և ուրիշներ: Հայտնի են երաժշտական քննադատ Մարիվոն Քենտերճին, օպերային երգիչ Արտո Մուհենտիսյանը, սոպրանո Իզաբել Բայրաքդարյանը: Երաժշտական խմբերից են «Արմենիա» նվագախումբը, «Նուբար», «Շիրակ» պարախմբերը, «Քնար» (1946, ղեկավար՝ Ե. Ալեքսանյան), «Հայաստան» (1968, ղեկավար՝ Սարգիս Համպոյան), «Անի» (1975, ղեկավար՝ Դ. Վարժապետյան) երգչախմբերը են: Քվեբեկում բալետի դպրոց է հիմնել Ս. Զարեհը, Մոնրեալում բալետի խումբ է ղեկավարում Սոնա Վարդանյանը, Կ-ի ազգային բալետի մենապարողներից է Դ. Սուրմեյանը: Լայն գործունեություն է ծավալել «Կոմիտաս» երաժշտական միությունը: Նշանավոր թատերական գործիչ Պերճ Ֆազլյանը 1976-ից ղեկավարում է ԹՄՄ-ի «Հայ բեմ» թատերախումբը: Գործում են նաև «Արմենյան» (1976, ղեկավար՝ Սելմա Քեկլիկյան), «Մանուկյան» (1992, ղեկավար՝ Արմեն Երկաթ, բալետային խմբի ղեկավար՝ Իրինա Երկաթ) և այլ թատերախմբեր: Բազմաթիվ գեղարվեստական ֆիլմերի հեղինակ է կինոռեժիսոր Ատոմ Էգոյանը, որի կինոնկարներում նկարահանվում է նաև կինը՝ Արսինե Խանջյանը: Ա. Էգոյանն իր ինքնատիպ արվեստով հասել է միջազգային ճանաչման: Նրա ֆիլմերը միջազգային կինոփառատոներում արժանացել են 2 Գրան պրիի (Կանն), «Ոսկե դուկատի» (Մանհայմ): 1993-ին Հայաստանում նկարահանել է «Օրացույց» ֆիլմը: Մեծ արձագանք ունեցավ նրա «Արարատ» (2002, ցուցադրվել է նաև Կաննում և Երևանում) ֆիլմը, որը նվիրված է հայերի ցեղասպանու-

Ատոմ Էգոյանը աշխատանքի պահին

թյանը: Բեմադրել է նաև օպերաներ: Հայտնի են նաև Արբո Բարաղամյանի, Լենա Երեցյանի ստեղծած գեղարվեստական ֆիլմերը: Կարճամետրաժ կինոնկարների հեղինակ է Կարինե Թորոսյանը (ֆիլմերը ցուցադրվել են Երևանում, 1998): Կերպարվեստի բնագավառում հայտնի են նկարիչներ Արման Թադոսյանը, Անահիտ Աբրահամյանը, Ջուլիա Նեշեհիրյանը, քանդակագործ Եվզինեն, լուսանկարիչներ Յուսուֆ Քարշը, Արթին Գավուքը, Ռոյ Թաշը: Յուսուֆ Քարշի անունն ընդգրկվել է միջազգային «Ո՞վ ով է» հանրագիտարանի հրատարակիչների պատրաստած՝ XX դարի 100 ամենահայտնի մարդկանց ցանկում:

Մալաք և Յուսուֆ Քարշ եղբայրները

Գաղութի հասարակական և մշակութային կյանքի հայտնի գործիչներից է Հարություն Արզումանյանը: Նրա «Նշմարներ» գրքում ամփոփված են տարբեր տարիների գրած հրապարակախոսական հոդվածները, խոհերն ու մտահոգությունները կանադահայ համայնքի մասին:

## ՄԱՄՈՒԼ

Կ-ում ցայսօր լույս է տեսել 21 անուն հայկական պարբերական: 1926-ին Ջորջթաունում հրատարակվել է Կ-ի հայորդիների միության «Արարատ» ամսագիրը, որը 1927-ին շարունակվել է «Արազած» անունով: Պարբերականները նպաստել են ազգապահպանման ջանքերին, երիտասարդ սերնդի դաստիարակությանը: Գրեթե յուրաքանչյուր եկեղեցի ունի իր լրատու թերթիկը: Եղել են և անհատական նախաձեռնությամբ հրատարակություններ. 1983–94-ին լույս է տեսել Բարկեն Թոփչյանի «Արմաշ» եկեղեցական, պատմական ու կրոնական բովանդակությամբ հանդեսը:

«**Ապագա**», հասարակական-քաղաքական, մշակութային շաբաթաթերթ: ՌԱԿ պաշտոնաթերթ: Լույս է տեսնում 1975-ից, Մոնրեալում: Խմբագիր՝ Արսեն-Նուբար Մամուրյան: Ծանոթացնում է կանադահայ գաղութի և սփյուռքի առօրյային, ներկայացնում Հայաստանը՝ իր ներքին և արտաքին խնդիրներով: Գրական բաժնում տպագրում է հայ գրողների գործեր: Ունի անգլերեն և ֆրանսերեն բաժիններ: Տասներկու հայերեն էջերից բացի, ունի երկուական էջ անգլերեն և ֆրանսերեն հավելվածներ:

«**Բուրաստան**», կրոնաբարոյական, մշակութային, հասարակական երկամսյա հանդես: Լույս է տեսնում 1964-ից, Մոնրեալում: Ս. Գրիգոր Լուսավորիչ հայ առաքելական եկեղեցու պաշտոնաթերթն է: Բովանդակում է հոդվածներ կրոնի, գրականության, մշակույթի մասին և այլ ընդհանուր տիպի երկեր:

«**Գեղարդ**», գրական, մշակութային եռամսյա պարբերաթերթ: Լույս է տեսնում 1969-ից, Մոնրեալում: Հրատարակում է Պոլսահայ միությունը: Ունի խմբագրական կազմ: Տպագրում է հայ հեղինակների երկեր, քննադատական ակնարկներ, լուրեր (մասնավորապես պոլսահայ կյանքից) են:

Պոլսահայ միության երիտասարդաց «Սայա» կազմակերպությունը հրատարակում է «Փունջ» պարբերաթերթը, անգլերեն և հայերեն:

«**Լրաքաղ**», Ս. Հակոբ հայկական եկեղեցու հրատարակություն: Լույս է տեսնում 1958-ից, Մոնրեալում: Տպագրում է հոդվածներ կրոնի մասին և կրոնական նորություններ Մոնրեալի, Կ-ի հայ գաղութի և այլ համայնքների վերաբերյալ:

«**Լուսաբաց**», պարբերաթերթ, լույս է տեսնում 1982-ից, Մոնրեալում: ՍԴՀԿ պաշտոնաթերթ:

«**Լուսարձակ**», Մոնրեալի Հայ ավետարանական եկեղեցու եռամսյա պաշտոնաթերթ: Լույս է տեսնում 1981-ից: Տպագրում է գլխավորապես տեղական և միջազգային կրոնական, նաև հայկական մշակութային նորություններ:

«**Հայ դատ**» (“The Armenian Cause”), պարբերական: Կ-ի Հայ դատի հանձնախմբի պաշտոնաթերթը: Լույս է տեսնում 1984-ից, Մոնրեալում: Նպատակն է «տեղեկացնել Կ-ի և հայ հասարակությանը Հայ դատի մասին, լուսաբանել, պարզել Դատին վերաբերող իրադարձությունները»:

«**Հորիզոն**», հասարակական-քաղաքական, մշակութային շաբաթաթերթ: ՀՀԴ Կանադայի շրջանի պաշտոնաթերթ: Լույս է տեսնում 1979-ից, Մոնրեալում՝ հայերեն, անգլերեն, ֆրանսերեն: Խմբագիր՝

Կիրո Մանոյան: Անդրադառնում է սփյուռքի և, ընդհանրապես, հայության հուզող հարցերին, հրատապ ու բազմաբնույթ տեղեկություններ հաղորդում հայ համայնքների մասին, մշտապես ուշադրության կենտրոնում պահում Հայաստանն ու Արցախը: Ունի գրական հավելված:

«**Նոր այգ**», ՀԲԸՄ պաշտոնական ամսաթերթ-տեղեկատու, լույս է տեսնում 1978-ից, Մոնրեալում: Տպագրում է հոդվածներ ու տեղեկություններ հայ մշակույթի և գրականության մասին:

«**Նոր սերունդ**», ամսաթերթ, լույս է տեսնում 1955-ից, Տորոնտոյում, հայերեն, անգլերեն, ֆրանսերեն: Հրատարակում է Տորոնտոյի Ս. Երրորդություն եկեղեցու վարչությունը:

*Գրկ.* Աշճյան Ա., Վիճակացոյց եւ պատմութիւն առաջնորդական թեմին հայոց Ամերիկայի, Նյու Յորք, 1948: Apramian I., The Georgetown Boys, Hamilton, 1976; Baghdjian K., La Communaute´ Arme´nienne Catholique de Montre´al, Montre´al, 1992; Bedoukian K., The Urchin. An Armenian's Escape, London, 1978; Chichekian G., The Armenian Community of Quebec, Montreal, 1989; Նույնի, Linguistic Assimilation and Cultural Completeness of Armenian Communities in Canada, «The Armenian Review», 40 (3/159), 1987; Department of the Secretary of State of Canada. The Canadian Family Tree,1967; Kaprielian I., Armenians in Ontario, "Polyphony. The Bulletin of the Multicultural History Society of Ontario", vol. 4, N 2, 1982; Նույնի, Armenians in Ontario: Past, Present and Future, "La Langue arme´nienne: Defis et enjeux. Actes du colloque de 3–5 juin 1994 a l'Universite de Montreal", Montreal, 1995; Նույնի, Reconstituting an Armenian Settlement in Canada, "The Armenian Review", 44 (1/173), 1991; Sharon M., Between Two Worlds. Canadian Immigrant's Experience, Quadrant Publishers, 1983; Shirinian L., Beginnings and Ends, Zoryan Institute of Canada, Toronto, 1991.

*Ն. Ուզունյան (Կանադա)*